

1917 № 12—Մարտի 26 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերի. Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման կրճատման։ Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։ Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՊԱՇՏՊԱՆԵՆՔ ԱԶԱՏՈՒԹԻՒՆԸ

Լուրջ ու պատասխանատու ժամանակ ենք ապրում։

Երկարատև աշխատանքներից, մեծ տանջանքներից և անթիւ զոհեր տալուց յետոյ Ռուսաստանի համայն ազգաբնակութիւնը վերջապէս հասաւ աւետաց օրին և մտաւ անհատական, հասարակական և քաղաքական ազատութեան շրջանը։

Եւ այսօր մենք բոլորս, Ռուսաստանի քաղաքացիներս, հրճւում ենք և ցնծում։

Բայց մի՞թէ ժողովրդական ազատութիւնը կարող է արդէն փրկուած համարուել վտանգից։

Հին ռեժիմը, իբրև մի բազմագլուխ վիշապ, չէր կարող հենց առաջին հարուածներից, որքան էլ մահացու լինէին, իսպառ ոչնչանալ։

Դարերի ընթացքում ժողովրդին հալածող, ճնշող, կեղեքող և հարստահարող հին կարգի (ռեժիմի) ոգին դեռ բոլորովին չի մարել. նա կարող է այստեղ-այնտեղ նորից կենդանութեան նշաններ ցոյց տալ, ժողովել իր ցիր ու ցան սև ուժերը և փորձել խորտակելու ազատութիւնը։

Թէև շատ չնչին և թոյլ են հակայեղափոխական շարժման նշանները և առայժմ արտայայտւում են անստորագիր նամակներով և համանման ձևերով, բայց պէտք է ի նկատի առնել, որ ժողովրդի մէջ կան գժգոհ ամբողջ դասակարգեր, պետական վարչական, ոստիկանական (պոլիցիական), ժանդարմերիայի և այլ պաշտօնեաներ, որոնք բաւերարուած էին հին կարգերի ժամանակ ի վնաս ժողովրդի, չեն կարող սրտով հաշտուել նոր, ժողովրդական կարգերի հետ։ Այս այն տարրերն են, որ ամեն մի յարմար րոպէ պատրաստ կը լինեն հակայեղափոխական շարժումն առաջ բերելու։

Զպէտք է մոռանալ և ամբոխային հոգեբանութիւնը, որ ունի իր առանձնայատկութիւնը և անսպասելի կերպով երբեմն էկսցեսներ է առաջ բերում մի որևիցէ հանգամանքի շնորհիւ, եթէ ղեկավար մարմինները աչքաթող են անում կամ թուլացնում իրենց հսկողութիւնը։

Անհրաժեշտ է աչալուրջ, շրջահայեաց լինել և անո-

ղորմ կերպով հարուածել ամէն մի հակառակ շարժում։

Եւ միայն այս տեսակ միջոցներով կարելի է արմատախիլ անել հին կարգը (ռեժիմը) և անհնարին դարձնել ըէակցիայի վերադարձը։

Պէտք է գործ դնել ամէն միջոց, եռանդ, որ մութ ոյժերը խպառ անհետանան և ձեռք բերուած ժողովրդական ազատութիւնը մնայ անխախտ և ապահով ամէն փորձանքից և վտանգից։

Ի՞նչ է պահանջւում այդ նպատակի համար։ Պատասխանը կը հետևի այն հանգամանքից, թէ ի՛նչ ոյժեր ոչնչացրին բռնակալութիւնը Ռուսաստանում և ստեղծեցին ազատութիւնը։

Զօրք, պրոլետարիատ եւ ժողովուրդ—ահա այն ոյժերը, որոնք փշրեցին, ոչնչացրին մեր իրաւազուրկ դրութիւնը եւ բաց արին ազատութեան դռները։

Այդ երեք ոյժերից է կախուած և ազատութեան ամրապնդումն և պատերազմի յաջողութիւնը։ Զօրքը, պրոլետարիատը և ժողովուրդը պէտք է իմաստալի կերպով կազմակերպուած լինեն դիմադրելու ըէակցիային։ Զօրքը և պրոլետարիատը կազմակերպուած են. մնում է կազմակերպել ժողովրդի զանազան խաւերը։

Երբ այդ երեք տարրերը կը լինեն կազմակերպուած և կապուած միմեանց հետ սերտ կերպով, կը դառնան այն հսկայական ժայռը, որի դիմադրութեամբ կը խորտակուի ամէն մի ըէակցիոն և հակայեղափոխական շարժում։

Ժողովուրդը պէտք է կազմակերպուի այնպէս, ինչպէս զօրքը և բանուորական դասակարգը, հիմնելով գործադիր մարմիններ՝ գիւղից սկսած մինչև նահանգական քաղաքները և աւելի բարձր շրջանները։

Ռուսաստանի ներքին նահանգներում ժողովրդի կազմակերպումը կատարուեց շատ արագ և հեշտ, շնորհիւ այն հանգամանքի, որ այնտեղ գործում են հասարակական հիմնարկութիւններ՝ զեմստվօ և քաղաքային վարչութիւններ, որոնք յեղափոխութեան հենց առաջին օրերին ստանձնեցին յեղափոխութեան գործը և կազմեցին գործադիր մարմիններ։

Կովկասում զեմստվոյի բացակայութիւնը և քաղաքային վարչութիւնների պակասութիւնը յեղափոխութեան օրերին նորից զգացուեց. Կովկասն հետևեց Ռուսաստանին և զանազան վայրերում սկսուեցին կազմակերպուել գործադիր մարմիններ տարբեր ձևերով և հիմունքներով։

Շատ շուտ զգացուեց անհրաժեշտութիւն կապ ստեղծելու բոլոր գործադիր մարմինների միջև, հարկաւոր համարուեց որոշել ընդհանուր սկզբունքներ նրանց համար և պարզել իւրաքանչիւրի իրաւասութեան սահմանները։

Այս նպատակով ամսիս 18—19 Թիֆլիսում կայացաւ Անդրկովկասի առաջին համագումարը գործադիր մարմինների ներկայացուցիչներից և մասնակցութեամբ ժամանակաւոր բարձր կառավարութեան Անդրկովկասի կոմիտէի նորեկ անդամների։

Համագումարի որոշմամբ պէտք է հիմնել գործադիր մարմիններ նահանգական, գաւառական, շրջանային և՛ գիւղական համայնական, իսկ ամէն մի՝ գիւղում գիւղական կոմիսարի օգնական։

Ամէն մի գործադիր մարմին կազմում է կոմիսարիատ, վարչութիւն 3 անդամից բաղկացած տեղական ազգութիւնների ներկայացուցիչներից։

Շրջաններում և գիւղական համայնքի կոմիտէները կոմիսարիատի փոխարէն ունենալու են մէկ կոմիսար։

Գործադիր մարմինների իրաւասութիւնն է՝ վարել վարչական ոստիկանական ծառայութիւնը, հոգալ պարենաւորման և ցանքսերի մասին, հակազդել հակայեղափոխական տարրերին, կանխելով կարգապահութեան և խաղաղութեան խանգարման առաջն առնելու։

Բարձր կառավարութիւնը պէտք է սահմանի վարձատրութիւն բոլոր պաշտօնեաների համար։

Իսկ նահանգական կոմիտէներից կազմւում է Անդրկովկասեան խորհուրդ կից տեղական ժամանակաւոր կառավարութեան։

Պարզ է, որ երբ վերջին գիւղից սկսած մինչև երկրի կենտրոնը կիրագործուեն այս նոր հիմնարկութիւնները, երբ հիմնարկութիւնների մէջ կը մտնեն գաղափարական անձինք, նուիրուած ազատութեանը հոգով և սրտով, այն ժամանակ ցրուած անկազմ ժողովուրդն էլ կը կազմեն մի անխորտակելի ոյժ զօրքի և պրոլետարիատի հետ միասին, որով և ազատութեան գործը դրուած կը լինի անշարժ հիմքի վրայ և ապահով բոլոր հողմերին և փոթորիկներին անսասան դիմադրելու։

Չպէտք է մոռանալ, որ բաւական չէ ստեղծել գեղեցիկ ժողովրդական հիմնարկութիւններ, այլ պէտք են և մարդիկ, որոնք ոգի ներշնչեն և կեանք տան այդ հիմնարկութեանց։

Ով զգում է պահանջ այս մեծ պատմական վայրկեանին ծառայելու ժողովրդին, ով գիտակցում է, որ ճակատագրական են մեր ապրած օրերը, պէտք է թողնի իր առօրեայ աշխատանքը և գնայ աշխատելու ժողովրդի մէջ ժողովրդական հաստատութիւններում, որոնք կոչուած են ամրացնելու ազատութիւնը։

Ազատութեան գործը դեռ վերջացած չէ, վտանգը անցած չէ. այժմ աւելի մեծ հմտութիւն և անձնուիրութիւն է պահանջւում ազատութիւնը ձեռքից չթողնելու և նրա գոյութիւնը անվտանգ դարձնելու։

Իսկ այդ կախուած է մեր ջանքերից, մեր համագործակցութիւնից։

Չմոռանանք և այն, որ եթէ մեր ազատութիւնը ենթարկենք փորձանքի, պատասխանատու կը լինինք և ապագայ սերունդների առաջ։

Սոսկալի կը լինի հին կարգի վերականգնումը, որ արիւնով կը ներկի Ռուսաստանը։

Այս միահամուռ ուժերով պաշտպանենք մեզ վիճակուած և տարիների ու արեան գնով միայն ձեռք բերուած ազատութիւնը։

Գործը մեծ է և պահանջում է անձնուէր մարդիկ, մարդիկ ու մարդիկ։

Ս. Ցարութինեանց

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

ՊԱՇՏՕՆԱՊԷՍ ՀԱՂՈՐԴՒՈՒՄ Է, ՈՐ ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԸ ՊԱՏԵՐԱԶՄ ԵՆ ՅԱՅՏԱՐԱՐԵԼ ԳԵՐՄԱՆԻՈՅ ԴԷՄ։

Վիլսոնը պատգամաւորների և աւագների խորհրդում յայտարարեց, որ պատերազմի յայտարարումը Գերմանիոյ դէմ մեծ օգնութիւն կը հասցնի Դաշնակից Պետութիւններին։ Պէտք է կազմել 500,000 հոգուց բաղկացած մի բանակ, մտցնելով ընդհանուր զինուորագրութեան պարտադիր օրէնքը։

Ռուսաց արեւմտեան ճակատում աննշան յարձակումներ և հակայարձակումներ են տեղի ունենում։ Գերմանացիները ահագին ուժ են կենտրոնացրել այս ճակատում Պետրոգրադի դէմ յարձակուելու համար։

Ֆրանսական ճակատում ֆրանսացիք քայլ առ քայլ առաջանում են։ Սէն-Քենտէնի շրջանում ֆրանսացոց հետախոյզներն առաջացան Դոլլոնից հիւսիս-արեւելք և գրաւեցին գերմանացոց ամրացրած դիրքերը։ Նեյլսիւ-Մարժիվալից արեւելք յամառ դիմադրող թշնամին յետ շպրտուեց մինչև Ֆայզոն՝ տալով 108 գերի և 4 գնդացիր։

Անգլիացիները գրաւեցին Սաւի, Վանդել, Բէզլէր գիւղերը և անընդհատ առաջանում են գերմանական խրամատների շրջանում։

Մարտ ամսուայ ընթացքում անգլիացիները ձեռք են բերել 1239 գերի, որոնցից 19-ը սպայ, 3 դաշտային թնդանօթ, 75 խրամատային գնդացիր և ահագին ռազմանիւթ։

Տարուայ սկզբից ի վեր առել են 4,600 գերի, որոնց թւում 79 սպայ։

Լագիի մօտ իտալացիք յանկարծական յարձակում գործեցին թշնամու դիրքերի դէմ և քանդեցին թշնամու բազմաթիւ խրամատները։

## ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԺԱՄԱՆՈՒՄԸ

Շաբաթ, մարտի 18-ին, առաւօտեան 10 ժ. 30 ր. Թիֆլիս ժամանեցին նոր կառավարութեան Անդրկովկասեան կոմիսարներ՝ Վ. Ա. Խարլամով. Մ. Պապաջանեան և Մ. Խ. Ջաֆարով, որոնց կայարանում միացաւ և Կ. Աբաշիձէն։

Դեռ ևս առաւօտից ժողովուրդն ու անդէն զօրքը բռնել էր կայարանն ու այն փողոցները, որտեղից պէտք է անցնէին կոմիսարները։

Կայարանից սկսած՝ Նիկոլաեւսկեան, Պիրոգովի, Միքայէլեան, Կիրոչնայա փողոցների և Վերայի վերելքի ու Գոլովինեան պողոտայի երկու կողմը զինուորներն ու ինկերները շարք-շարք կանգնել էին իրենց սպաների հետ։ Նաև կանգնել էին և միջնակարգ դպրոցների աշակերտները երաժշտախմբերով։

Ծածանւում էին կարմիր դրօշակներ զանազան մակագրութեամբ. «Կեցցէ յեղափոխական կառավարութիւնը», «Պատերազմ մինչև յաղթական վախճան», «Կեցցէ ազատ Ռուսաստան» և այլն։

Գնացքի գալուց մի քիչ առաջ կայարան հաւաքուեցին Թիֆլիսի Գործադիր Յանձնաժողովի անդամները, բանուորների ու զինուորների պատգ. խորհուրդների ներկայացուցիչները և մի քանի պաշտօնական անձինք։

Երբ գնացքը կանգ առաւ կայարանում և գնացքի ետեից կցած կոմիսարների յատուկ վագոնից դուրս եկան Վ. Խարլամովը, Մ. Պապաջանեանը և Մ. Ջաֆարովը՝ թնդաց «ուռա», և երաժշտախումբը նուագեց—«Մարսելեզը», որ զինուորականները լսեցին զինուորական պատիւ տալով։

Կոմիսարներին ողջոյն և բարի գալուստ մաղթեց Թիֆլիսի Գործադիր Յանձնաժողովի կոմիսար Ալ. Խատիսեանը՝ Գործադիր Յանձնաժողովի և բանուորական ու զինուորական պատգամաւորների խորհուրդների կողմից, որից յետոյ ողջունեց նաև Կովկ. շրջ. զինուորակ. սպայակոյտի (շտաբի) պետ գեներալ Բոլխովիտինովը։

Կոմիսարները ներկաների ուղեկցութեամբ մտան արքայական սրահը, որտեղ նրանց ողջունեց և բարի գալուստ մաղթեց Թիֆլ. Գործադիր Յանձնաժողովի կոմիսար սպայ Պոպովը, բանակի հայթայթիչ վարչութեան պետ գեներալ Կարպովը, բանուորական պատգամ. խորհրդի ներկայացուցիչ Եւսէեը, զինւ. պատգ. խորհրդի ներկայացուցիչ Վերեշչակը և զինուոր. պատգ. խորհրդի Գործադիր Յանձնաժողովի կողմից սպայ Կրամէրը։ Կոմիսար Վ. Խարլամովը դիմելով զօրքին բացականչեց. «Կեցցէ ռուս բանակը», «Կեցցէ Ժամանակաւոր Կառավարութիւնը», «Կեցցէ ազատ Ռուսաստանը»։ Նրա իւրաքանչիւր բացականչութիւնը ծածկւում էր աղմկալի «ուռա»-ներով և «Մարսելեզով»։

Խարլամովը ողջունեց ազատ Ռուսաստանի ազատ քաղաքացիներին, և մի քանի խօսքով առանձնապէս ընդգծեց համերաշխ և միացեալ գործունէութեան անհրաժեշտութիւնը, որպէսզի հնարաւոր լինի կռուով ձեռք բերուած ազատութիւնը պաշտպանել մինչև պատերազմի յաղթական վախճանը։ Կոմիսարը իւր ճառը վերջացրեց հետևեալ եզրակացութեամբ. «Վիլհելմի յաղթութիւնը՝ ազատութեան պարտութիւն պէտք է համարել. ուստի պէտք է բանակին տալ ամեն բան, որպէսզի կռիւը թշնամիների դէմ շարունակեն մինչև յաղթանակ»։

Կոմիսարի խօսքերը ծածկուեցին «ճիշտ է», «ուռա» և «պարտաւոր ենք» բացականչութիւններով։

Արքայական սրահից դուրս գալով հրապարակ Խարլամովը ողջունեց բանուորական պատգամ. խորհրդի ներկայացուցիչներին, որից յետոյ կոմիսարները նստեցին առանձին-առանձին ինքնաշարժները (աւտոմոբիլներ) ու երթը դանդաղ շարժուեց «ուռա»-ներով։

Երթին առաջնորդում էին Միլիցիայի պետ Կոզանը և Թիֆլ. Գործադիր Յանձաժողովի ներկայացուցիչները։

Կոմիսարների ինքնաշարժ կառքերումն էին բանուորական և զինուորական պատգամ. խորհրդի ներկայացուցիչները, իսկ նրանց կենտրոնում կանգնած էին կոմիսարները գլխաբաց և ժպտադէմ ողջոյն էին տալիս մեծարանք (օվացիա) անող զինուորներին, ժողովրդին և աշակերտութեանը։

Ճանապարհին մէջընդմէջ հնչում էր յեղափոխական քայլերգը. երբ կոմիսարները մօտեցան արքունական պալատին՝ թնդաց «Մարսելեզը»։

Պալատ հասնելուն պէս՝ պատշգամբ դուրս եկան կոմիսարներ՝ Վ. Խարլամովը, Մ. Պապաջանեանը, Մ. Ջաֆարով, և թուելով ընկած կառավարութեան ապիկար գործերը, կանգ առան ներկայ վայրկեանի լուրջ ու խոհուն գործունէութեան անհրաժեշտութեան վրայ. կոչ արին, որ անհրաժեշտ է միահամուռ ուժերով ամրապնդել նոր կառավարութիւնը և օժանդակել, որ խոր արմատներ ձգէ ժողովրդի մէջ։ Պապաջանեանը շեշտեց այն միտքը, որ մենք հին կառավարութեան ուժերը աւելի էինք կար-

ծում, որ սակայն այնպէս շուտ խորտակուեց, իսկ մեր Չոյժերն էլ ցած գնահատում. Կովկասի ազգերը մոռանալով բոլոր հին հաշիւները թող զօրավիգ լինին նոր կարգերին և նոր կառավարութեան յօգուտ Ազատ Ռուսաստանի և Կովկասեան ազգերի։ Իսկ Ջաֆարովը զգացուած ձառում շեշտեց այն միտքը, թէ Կովկասի ժողովուրդների միակ թշնամին հին կառավարութիւնն էր, մինչդեռ մեծ ռուս ազգը բուռն կերպով ցանկանում է, որ թուրքերը, հայերը, վրացիք, հրէաները և այլ մանր ազգութիւններն ապրեն մշտապէս եղբայրական կապերով, առանց ազգային երկպառակութիւնների։ Ջաֆարովի բացագանչութեան, թէ ոչ ոք չի յանդգնի ձեռնամուխ լինել ժողովրդի և զօրքի ձեռք բերած ազատութեանը՝ պալատի առաջ հաւաքուած բազմութիւնը՝ ինչպէս մի մարդ գոչեց.

— Ոչ ոք։

Նոյն բազմութիւնը ուժգին արձագանգ տուեց նաև այն կոչին, թէ Կովկասի ազգերը թող իրար եղբայրական ձեռք մեկնեն ու ապրեն համերաշխ։

Բոլորի ձառերն էլ յաձախ ընդհատւում էին և աւարտւում ժողովրդի որոտընդոստ ծափահարութեամբ։

## ԳՐԱԿԱՆ-ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՍԱԼՈՆ

Այս հայկական հաստատութիւնը, որ 10 տարուց աւելի գործում է, Տիգրան Նազարեանցի օգտակար գործերից մինն է։ Այստեղ ուրբաթ օրերը երեկոյեան հաւաքւում են բազմաթիւ երկու սեռի ներկայացուցիչներ հերթական հասարակական խնդիրների մասին զրուցելու և խորհրդակցելու։ Այստեղ շատ յաձախ տեղի են ունենում երեկոյթներ և դասախօսութիւններ հասարակական, ազգային և գիտական հարցերի, որոնցից յետոյ տեղի են ունենում խորհրդածութիւններ և պայքար։

Այդ երեկոյթները շատ անգամ բարեխառնւում են համերգներով, ուր առանձին տեղ է գրաւում Իտալայի Բրոջին։

Պէտք է շեշտել առանձին իմն և այն, որ սալոնը միակ հաստատութիւնն է, ուր Թիֆլիսի բազմաթիւ ազգութիւններ իրար են հանդիպում և իրար հետ խնլամուտ լինում, հասկանում և առհասարակ մօտենում։

Ամսիս 17-ին Սալոնի հերթական jour-fixe-ը կոչւում էր «Վիշտ ու Սփոփանք»։ Հրապարակական պաշտամունք և մեծարանք Ռուսիայի Մեծ Յեղափոխութեան մարտիկներին և հիացմունք յեղափոխութիւնը կազմակերպող Պետական Դումայի արդի ժամանակաւոր կառավարութեանը։ Եղան բանախօսութիւններ, օրհներգներ, մրմունջներ նուագածութեամբ հանդերձ տասն և երկու լեզուներով։ Նախագահում էր Ս. Արծրունին. խօսեցին Բենիկ Վ. յաւէրժ յիշատակ մաղթելով Ե. դարու հայոց հին Վարդանանց և Նորագոյն տաձկահայ նահատակներին։ Լեհ Ռոպին խօսեց Լեհաստանի անկումը և համառօտակի յիշելով լեհ գիւղացի Կոստուշկոյի 31 թուականի ապստամբութիւնը, յայտնեց, որ վերջիններիս դրօշակի վրայ գրուած էր «մեր ու ձեր ազատութեան համար»։

Շատ յաջող բանախօսեց հրէաների ռաբբին նախ հին եբրայեցերէն, որ յետոյ թարգմանեց ռուսերէն, որպէս և մի լատինահայ Զաքարեանը խօսեց ֆրանսերէն, յիշատակելով ֆրանսացոց մեծ և 1871 յեղափոխութիւնը և իւր հերոսներին. այնուհետև խօսեցին և երգեցին շատերը։

Կարելի էր մխիթարուել հոգով թէ ինչպէս Տ. Նազարեանցի ձեռներէց և հնարագէտ ոգու այս հաստատութիւնը դառնում է մի քրիստոնէական աղապի—աղապ՝ սիրոյ հաստատութիւն, ուր բոլոր ազգերը միմեանց հաշտութիւն ու միաբանութեան ձեռք են մեկնում։

Արդարև Ազատ Ռուսաստանը նմանւում է այն գեղեցիկ ծաղկափնջին, ուր ամեն ազգութիւն իբրև ինքնուրոյն ծաղիկ իւր սեփական բոյրով մի ամբողջութիւն են՝ կազմում փոխադարձաբար աւելի գեղեցիկ և հոտաւէտ դարձնելու միմեանց, առանց կորցնելու իրենց ուրոյն ազգային համն ու հոտը։

Սկայ

## ՎԱՂՈՒԱՅ ՀԱՅ ԳԻՒՂԸ *)

### ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԸ

Մենք մտադրութիւն չունենք բոլորովին նորոյթներ մտցնել հայ գիւղի մէջ։ Այսու հանդերձ նկատի ունենալու է գլխաւորապէս ժամանակի պահանջներն ու ձաշակի մէջ յառաջ եկած կամ գալիք յեղաշրջումը։ Ճիշտ է, որ «վաղուայ հայ գիւղը» խոշոր ծախքեր կը պահանջէ, և որովհետև մենք պարտաւոր ենք հայ գիւղը վերականգնել մեր ապագայ հաւաքականութեան պահպանութեան համար, ինչու, ուրեմն, ծախքերու մասին մտածել և կանուխէն չգիտնանք գործադրել այն բոլոր միջոցները, որոնցով բաւականութիւն պիտի տրուի ժամանակի պահանջներուն և հողի արդիւնաւոր մշակութեանը։

Գիւղի լքումը ծայր տուած էր մի քանի տասնեակ տարիներէ ի վեր, թէև դանդաղ ու շատ վայրերու մէջ մի կերպ անզգալի։ Հոսանքը չվերսկսելու և չուժեղացնելու համար անհրաժեշտ է նոր կեանք ստեղծել գիւղի մէջ՝ աւելի դիւրակեաց, աւելի հաձոյալից, որով միայն պիտի կարողանանք ապահովել գիւղի գոյութիւնը։

Ինչու համար գեղջկուհին իւր աչքերը քաղաքին տնկած է։ Այո, քաղաքացի ընտանիքէ մէջ աղախին գնացող գեղջկուհին աւելի կը շահէ, շահածը իւրն է. համաձայն ենք, բայց նա կը լքի գիւղը նաև այն պատձառով, որ քաղաքի մէջ պակաս կոպիտ վարմունքի կամ տգեղ երևոյթներու ականատես կը լինի և աւելի յարմարութիւններ կունենայ բարեկեցիկ լինելու, մաքուր հագնելու համար։

Ինչու գիւղացին անգամ վազում է դէպի քաղաք։ Ճիշտ է քաղաքի մէջ խմած փոքրիկ բաժակը դիւրեկանութիւն ունի, բայց հաւատացէք, եթէ իւր տունը մի քիչ ծիծաղկոտ, մաքուր լինէր, այնտեղ պիտի մնար։

Ընդունում ենք, որ թէ մէկ և թէ միւս պարագային կամ ընագդական մղում և թէ գիւղը լքելը արտաքուստ չունի թերևս այն պատձառները, որոնք թուեցինք, բայց դարձեալ յիշեցնում ենք, որ եթէ «գաղթական» գիւղացին Կովկասն ու իւր մի քանի քաղաքներ կամ փոքրիկ առուելութիւններ տեսաւ, ընիկ գիւղացին ալ մօտ երեսուն տարիներէ ի վեր զօրք կը գնայ, արտաքին կեանք տեսած է։ Խնդիրը այն է, որ մեր գիւղը կը պարպուի, թէև առայժմ իրական պատձառներու ոչ լրիւ բացատրութիւնով։

Թոյլ կը տանք աւելի հեռուն գնալ։ Ցանկալի է, որ գիւղի մէջ քիչ էլ ձաշակ, գեղեցկութիւն մտցուի։ Պատերու վրայ նկատենք մեր անցեալի պատմութեան գլխաւոր անցքերէն, հողագործութեան օգտակար միջոցներ ու ձևեր։ Այս բաների հետ և կողքին դնենք արբեցութեան վնասները բացատրող ու գիւղական գեղեցիկ կեանքը ներկայացնող նկարներ։ Նկարով եղած ուսմունքը, առանց միտքը յոգնեցնելու աչքերով տեսնելու և սորվելու գիտութիւնը ամենամեծ օգտակարութիւն ունի դաշտային ծանր աշխատանքներ կատարող գիւղացիի համար։ Վերջապէս մի քանի ծաղիկներ թաղարներու մէջ, գեղեցկութիւն կը մտցնեն միօրինակ կեանքի մէջ։ Ծաղիկնե՜ր—լեցուն մեր սարերու վրայ

*) Տես «Համբաւաբեր» № 9, 10և 11։

ու դաշտերու մէջ, բայց սէր չունենք դէպի այդ երկնային գեղեցկութիւնը, չենք տեսնում ու չենք վայելում։

Տաղտուկ կեանքի ու անաշխատ վիճակի ենթարկուած գեղջկուհին վարժուելու է տնտեսագիտութեան, գիւղական փոքրիկ զբաղմունքներու։ Ամբողջ ձմեռուայ մէջ անպատակ ապրող գիւղացին ունենալու է իւր արհեստը, իւր խանութը, իւր մասնաւոր աշխատութիւնը։

Բայց միայն առանձին տուներ չէ, որ պէտք է վերականգնել։ Կան ամողջ գիւղեր, որոնք նոյնպէս վերաշինուելու են, երբ նոյնպէս մոռնալու չէ ժամանակն ու իւր անյետաձգելի պահանջները։

Մեր բոլոր գիւղերն էլ նախաջրհեղեղեան ձեւով շինուած են և յիշեցնում են Քսենոֆոնի նկարագրած հայ գիւղը մի քանի հազար տարիներ առաջ։ Նեղ ու ծուռումուռ փողոցները այլեւս գոյութիւն ունենալու չեն։ Պէտք է որ փողոցները լայն լինեն, ուղիղ շինուեն. իսկ ջրափներուն շինուած գիւղերն ունենալու են քարափներ։ Այլեւս ոչ մէկ դուրս ընկած տուն կամ պատ, ոչ մէկ վտանգաւոր դարձ-փողոց։ Ցանկալի չէ՞, որ վերջի պարագային, փողոցի անկիւնը, տախտակի մը վրայ գրուի. «Զգուշութիւն»։

Գիւղն ունենալու է իւր դպրոցը՝ շրջապատուած բարձրուղէլ ու վարսաւոր ծառերով, որոնց շուքի տակ աշակերտները կարողանան զբօսնել՝ արևի շողքերէն ազատ։ Զբօսավայրի մէկ մասը յատկացնելու է գիւղացիներուն, ուր հաւաքուելով, «օթախներու» մէջ հաւաքուելէ աւելի, դիւրութիւն պիտի ունենան առողջարար օդի մէջ ապրելու։ Եւ այդ զբօսավայրը որքա՜ն աւելի օգտակար պիտի լինի, քան նրանց երեւակայած քաղաքի կեանքը։

Ցանկալի էր, որ գէթ մեծ ձեռնարկներու մէջ շինուէին աշխատաւորներու համար առանձին մի տեղ, ճիշտ այնպէս, ինչպէս որ գոյութիւն ունի արտասահմանի մէջ։ Անգլիայի և Ամերիկայի guild house և Սկանդինաւեան երկիրներու Samlag գեղեցիկ օրինակներ են մեզի համար։ Նման զբօսավայրեր պատուար են ալքօլականութեան դէմ։

Իսկ որպիսի՜ փոփոխութիւններ մտցնելու է առողջապահութեան ու առողջապահիկ մի միջավայր ստեղծելու համար։ Ջրանցքներ շինելու է տուներու կեղտոտ ջրի, անձրեւի համար և ըմպելի ջուր տանելու է իւրաքանչիւր գիւղի մէջ։ Խիստ կերպով հսկելու է, որ ջրհորները անմիջապէս արտաքին ջրերու ներածծումին ենթակայ չլինի, հակառակ պարագային տուարներու մէզը, արտաքնոցներու արտաթորութիւնները, փողոցներու մէջ վազող կեղտոտ ջրերը կը ծծուեն հողի շերտերու մէջ, որը մենք կը գործածենք խմելու համար։ Իսկ թէ մեր գիւղերու մէջ յառաջացած վարակիչ հիւանդութիւններն այդ անհոգութեան հետեւանք են, ոչ ոք կարող է ուրանալ։

Նոյն հոգատարութիւնը գերեզմանատուներու համար։ Դժբախտաբար, մեր սիրելիներու ու մեր պաշտելիներու վերջի հանգստարաններն անգամ ապականուած ու քանդուած են թշնամու ձեռքով. շատ վայրերու մէջ նոյնիսկ չունենք հետք նրանց սիրելի յիշատակարաններէն, որպէսզի կարողանայինք, որ մէկ կաթիլ արտասուք թափել նրանց հողաթումբի վրայ և յուսալ, որ մենք պիտի կարողանանք նրանց կողքին յաւիտենա հանգստանալ։ Պէտք է վերաշինել այդ գեղեցիկ յուշավայրերը, միայն օգտուենք մեր կամքէն անկախ պատճառներով ստեղծուած բարեպատեհ առիթէն և գերեզմանատուները փոխադրենք գիւղերէ դուրս և այդպիսով ապահովենք գիւղի հասարակութեան առողջութիւնը։

Գիւղի առողջապահութիւն, ինչե՜ր չեն ասուած այդ մասին։ Շատերը խորհում են, թէ գիւղն աւելի առողջարար է, քան քաղաքը։ Ճի՞շտ է, արդեօք։ Եթէ նկատի չունենանք գիւղի օդը, միւս բոլոր առաւելութիւնները ենթադրութիւններ են միայն։ Որի՞ն յայտնի չէ, որ գիւղերու մէջ համաճարակ հիւանդութիւններ առատ հունձք են անում շատ անգամ։ Ո՞րն է պատճառը այս անբնական իրողութեանը։ Պատճառն այն է, որ եթէ քաղաքներու մէջ քիչ թէ շատ հոգ կը տարուի արտաքին ու ներքին մաքրութեան, այդ նոյն հոգատարութիւնը բնաւ գոյութիւն չունի գիւղերու մէջ։ Մեր պարտականութիւնն է ուղղել այդ սխալը։

Այո, մեր շօշափած կէտերն ու վերանորոգութիւնները խոշոր ծախքերու հետ կապուած են. շատ ճիշտ է. բայց մի՞թէ կարծում էք, որ մենք առաջարկում ենք ամեն ինչ կատարուի մէկ ձեռքով, մէկ օրուայ մէջ գլուխ բերուի։ Բայց դարձեալ կրկնենք. աննախընթաց ներկայ մեծ չարիքը իրեն հետ պիտի տանէ շատ ու շատ իրողութիւններ, մաքրած ու սրբած և շատ ու շատ սովորութիւններ։ Գիտենանք օգտուել գէթ այն գիւղերու կամ այն կեանքի վերականգնման համար, որոնց ի նպաստ աշխատելու կը գնանք։

* * *

Ինչպէս որ յուսալից ու ակնապիշ սպասում ենք, որ ներկայ ահաւոր պատերազմի մէջէն հայ հայրենիքը պիտի վերածնի նոր կեանքով ու նոր ապահովութիւններով, յուսանք նոյնպէս, որ գիւղական կեանքը պիտի վերածնի նոր պահանջներու համեմատ, և հայ գիւղացին, որքա՜ն դառն փորձութիւններէ յետոյ, պիտի կարողանայ ըմբռնել բարեկեցութեան կարիքը ու աւելի հասկնայ հայրենի հողի քաղցրութիւնը։

Երեւան — Ա. Մաքսապետեան

---

## ՏԵՂԵԿԱԳԻՐ ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻ*)

*(Սեփական թղթակցից)*

*Ապրիլ 28 ից 1916 թ. մինչև փետրուար 1-ը 1917 թ.*

Վերակազմեալ Կոմիտէն վերսկսելով իւր գործունէութիւնը դեկտեմբերի մէկից՝ իւր հովանաւորութեան տակ և հսկողութեան ներքոյ գտնուած շարժական կայքերի մի մասը հետզհետէ բաժանում է ձրիաբար կարիքաւոր հայ փախստականներին, իսկ մի մասն էլ ի վաճառ հանում և փողի է վերածում Մօտաւորապէս երեսուն հազար ռուբլու ապրանք և իրեղէն է վաճառուում և հաշուեմատեաններում արձանագրւում ըստ պատկանելոյն. բայց որովհետև գրաւման (ռեկվիզիցիայի) յանձնաժողովի 100,000 ռուբլուց աւելի գումարը դեռ ևս գանձուած չէ, ուստի և Կոմիտէն անկարող է հանդիսանում մեծ գումարներ տրամադրել մի շարք կարևոր և ազգօգուտ պարտականութեանց կատարման համար։

Չպէտք է մոռանալ այնուամենայնիւ, որ առևանգուած հայուհիների և բազմաչարչար որբիկների որոնման և գազանաբարոյ թուրքերի երախներից ու ճանկերից փրկելու նպատակով պահանջւում է բաւական պատկառելի գումար և ծախս, որպիսին Հայկական Կոմիտէն իւր արդի միջոցներով մեծ չափով չէ կարող լրացնել։ Ցարդ՝ Տրապիզոնի Հայկական Կոմիտէն 200 որբ էր գտել. որոնց մեծագոյն մասը խնամւում է Ընկերութեան Բաթումի ճիւղի որբանոցում, մի մասը յանձնուած է մերձաւոր ազգականներին ու մի փոքրիկ մասն էլ խնամւում է այստեղի որբանոցում, Քաղաքների Միութեան հաշուով։

Հայ կարօտեալներին այլ և այլ ժամանակներում զանազան պէտքերի համար բաշխուած է մօտաւորապէս ութ հազար ռուբլու պարէն և դրամ. Նմանապէս ծախսուած է եօթհարիւր յիսուն

*) Տես «Համբաւաբեր» № 11։

ռուբլի Տրապիզոնի շրջանի փախստականներին Երզրումից—Տրապիզոն փոխադրելու համար։

Իսկ ինչ վերաբերում է հայապատկան անշարժ կայքերի պահպանման՝ Հայկ. Կոմիտէն նպատակայարմար գտաւ կանգուն տները և կրպակները վարձու տալ, իսկ հողային ստացուածքների քանակութիւնն ու տարածութիւնը որոշելու նպատակով կազմեց մի յանձնախումբ, որը տակաւին չէ վերջացրել իւր աշխատանքը։

Գալով Տրապիզոնի և շրջանի հայ բնակիչներին՝ ի բաց առեալ երթևեկները՝ Հայկ. Կոմիտէն իւր հաւաքած ստոյգ տեղեկութիւններից տեսաւ մօտ 700 անձ, որի համարեա կէսը կարօտ է նպաստի. կարօտեալներից 150 անձ չափահաս այրեր, իսկ 147 անձ՝ կին և երեխայ են։ Վերոյիշեալ թուերը անշուշտ ճշտութիւն չեն կարող համարուել, որովհետև օրըստօրէ փախստական նորեկներով աճում են թուերը։ Այդ մարդահամարը կազմուած է փետրուարի մէկին ստացուած տեղեկութիւնների և ցուցմունքների հիման վրայ։

Նոյն տեղեկագրում՝ հակառակ Կոմիտէի ցանկութեան՝ յիշատակելու արժանի է Կոմիտէի խափանման ժամանակամիջոցում նրան փոխարինող յանձնաժողովի մասին, որի նախագահն էր ոստիկանապետ Չիժովսկին, և երեք անդամներից մին տխրահռչակ և անփառունակ բողոքարկու Կալեմքերեանը։ Այդ յանձնաժողովը չկարողացաւ իւր գործունէութեան հաշիւը տալ, չնայած որ Տրապիզոնի և շրջանի ամբողջապէս զինուորական կառավարիչ գեներալ-մայոր Շվարցը դրել էր այդ յանձնաժողովի վրայ լուրջ և պատասխանատու պարտականութիւններ. այսինքն՝ նա պիտի պահպանէր հայապատկան շարժական և անշարժ ստացուածքը։ Յանձնաժողովի անհոգութիւնից մեծաքանակ չափով կորստի են մատնուել հայերի կայքերը։

Նոյն այդ անտէրունչ ժամանակամիջոցում չարամիտ Կալեմքերեանը՝ առանց խղճի խայթի՝ ականատես էր լինում կատարուած տխուր իրականութեան, և որն ի վերջոյ վերցնելով իւր հետ հայապատկան մագազիններում և մթերանոցներում գտնուած ապրանքների մասին կազմուած տեղեկատու մատեանը, և միևնոյն ժամանակ առաջնորդարանի և հայկական պահեստի բանալիները յանձնելով անպատասխանատու մի ողորմելի պահապանի՝ հեռանում է Տրապիզոնից։ Կատարուած այդ իրողութեան՝ ոստիկանապետ Չիժովսկին անգիտակ և անտեղեակ է եղել։ Անցնում է մի որոշ ժամանակ, և ահա վերստին երևում է Տրապիզոնում նոյն Կալեմքերեանը՝ արհամարհուած ամենքից, նողկանքի և դառն երգիծանքի ենթարկուած հայերի կողմից, բայց միաժամանակ անպատիժ՝ կառավարութեան կողմից։ Գեներալ Շվարցը ի ներկայութեան հայոց հոգևոր իշխանութեան Տրապիզոնի ներկայացուցիչ հ. Մեսրոպ աւագ-քահանայ Մելեանի՝ հրամայեց որ եթէ Կալեմքերեանը մինչև 30 նոյեմբեր 1916 թ. չկարողանայ ապացուցել իւր յարցուած ամբաստանագիրը՝ ընդդէմ Հայկ. Կոմիտէի, օրինական պատժի պիտի ենթարկուի։

Հայկ. Կոմիտէն Կալեմքերեանին տեսնում էր Տրապիզոնում մինչև դեկտեմբերի վերջերը անպատիժ, և այդպէս անպատիժ էլ հեռացաւ, գնաց դէպի Բաքու, սև յիշողութիւններ և պժգալի պատմութիւն թողնելով Տրապիզոնի հայկական կեանքի պատմական էջերում։

Սեղ—Ման

---

## ՀԱՅՈՑ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻ ԹԻՖԼԻՍԻ ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԱՐՀԵՍՏԱՆՈՑԸ

**Փախստականներին Թիֆլիսում գործ հայթայթելու նպատակով Հայոց Կենտրոնական Կոմիտէն անցեալ 1915 թ. դեկտեմ**բերի 7-ին բացեց արհեստանոցներ, համախմբելով իւրաքանչիւր ճիւղի մասնագէտ վարպետներին և տալով նրանց անհրաժեշտ գործիքներ և նիւթեր։ Իսկ կանանց և երեխաների համար ձեռնարկեց կազմարարական և ծրարներ պատրաստելու գործ, վարձելով յատուկ վարպետ-ուսուցիչ, որը սովորացնում էր նրանց այդ արհեստները։

Եղբ. Մանթաշեանները և Ա. Ա. Մելիք-Ազարեանը սիրալիր կերպով իրանց նորակառոյց շինութիւնների մէջ Կոմիտէի արամադրութեան տակ էին դրել ձրիաբար մեծ խանութներ, որտեղ զետեղուեցին գլխաւոր արհեստանոցները, իսկ չուստանոցի համար վարձուեց մի խանութ Մուխրանեան փող. մասնաւոր տան։

Տարուայ ընթացքում դերձակները, կօշկակարները և չուստ կարողները բաժանուեցին գլխաւոր արհեստանոցից և սկսեցին սեփական գործ, որը շարունակում են մինչև օրս, իսկ Կոմիտէի հովանաւորութեան տակ մնացին 3 արհեստանոցներ՝ կազմատուն, ծրարնոց և ջուլհականոց, որոնք գտնւում են Գանովսկայա փող. եղբ. Մանթաշեանների տանը և ուր աշխատում են օրական 40 հոգի տղամարդ, կին ու երեխայ.

Մինչև 1 յունուարի 1917 թ. արհեստանոցներում պատրաստուել են հետևեալ իրերը։

Դերձականոցում մօտ 2,600 կտոր շորեղէն, 100 կաշուէ տուժուրկայ, 11 վերարկու։ Կօշկակարանոցում 450 չ. կօշիկ մեծ և փոքր։ Չուստանոցում 5,320 զ. չուստ մեծ և փոքր։ Ծրարների բաժնում 2,000,300 ծրար զանազան չափսերի։

Կազմատանը 5,000 տուփ շերամապահութեան համար, 300 տուփ զանազան տեսակի, 155,000 աշակերտական տետրակներ. կազմուել է մօտ 2,000 գիրք և կատարուել են մեծ քանակութեամբ զանազան կազմարարական պատուէրներ։

Ջուլհականոցում գործուել են 8,400 արշին բրդէ կտորներ, 5,000 բամբակի թելից գործուածքներ զգեստների համար, 3,800 արշ. սրբիչներ և կատարուել են պատուէրներ Ադելխանովի, Զարգարեանի և Կարլինսկու գործարանների համար յատուկ օրինակներով։ Մինչև յունուարի 1-ը 1917 թ. մուտք եղել է 63,731 ռ. 89 կ., ծախս՝ 64,902 ռ. 13 կ.։

Արհեստանոցը ունի կահաւորումն 8,000 ռուբլու և մեծ քանակութեամբ հում նիւթեր և պատրաստի ապրանքներ։

Արհեստանոցները գտնւում են Կոմիտէի անդամ իշխ. Մ. Թումանեանի ղեկավարութեան և հսկողութեան տակ։

---

## ԳԱՒԱՌ

*Սև-քար, 23 փետրուարի.*

*Սոված և անյոյս...*

*...Զարչրկուած գաղթականի չարչրկուած հարց...*

Վերջին օրերու դրութիւնը այնքան յուսահատական է, որ իրաւամբ կարելի է «երկրորդ շրջան» անուանել այդ։ Առաջին այն շրջանն էր, երբ մաղապուրծ հազիւ ընկան այս հողը կիսամեռ և արիւնլուայ գաղթականները, երբ «հոգածու» մարմիններ բնականօրէն շշմած էին այդ ծով բազմութեան ծով-կարիքների առաջ և երբ արուած ամեն մի օգնութիւն, մի կաթիլ ջուր էր նկատւում ի տես թշուառութեանց և հիւանդութեանց...

Բ. շրջանն է այժմ, որովհետև չնայած այսքան երկար ժամանակաշրջանի զանազան միութիւններու և մարմիններու կազմուելուն, չնայած ժողովներուն և խորհրդակցութիւններուն՝ դեռ գաղթականը անյոյս է և սոված...

Անտէր, մերկ, սոված...

Ամեն վայրկենին դուք կը լսէք դողդողացող շրթունքներից. «հերու շատ լաւ էր»... և իսկապէս անցեալ տարի դեռ նոր տե-

դաւորուած գաղթականներին՝ որոշ չափով ժամանակին հասնում էր ալիւր, շաքար, զգեստ. իսկ այս օրերին... Նպաստի կէսը կտրուեցաւ. անցեալ տարի տրուած հագուստներն արդէն բզիկ-բզիկ եղած...

Ամիսներ առաջ յայտարարուեցաւ մի աշխատանքի բիւրոյի կազմուելու մասին, որի օգնութեամբ գաղթականներին պիտի գործ հայթայթուէր, ապրէին ու ապրեցնէին. այսքան սրտապնդիչ այս լուրէն անցնում են ամիսներ և ոչ մի գործունէութիւն, ոչ մի ջանք այս լքուածներին ազատելու սպառնացող սովից և մերկութիւնից...

Սոված և անյոյս...

Այս րոպէին 500 պուդ ալիւր կայ տեղիս գաղթականների համար, բայց ոչ ոք փող չունի գնելու և ոչ ոք, ոչ մի պետական թէ հասարակական մարմին չի երաշխաւորեր պահեստապետին, որ պարտիկ տրուի այդ ալիւր, որ սովից չմեռնեն մինչև նպաստի ստացուելը, և անմխիթար և անյոյս շշմած՝ իրենց ծնած օրն անիծելով՝ երերում են այժմ գաղթականներն սառւերներու պէս...

Գոնէ յոյս, յոյս տուէք վաղուայ կեանքին, որ գաղթականը յուսայ թէ կապրի վաղ... մինչև վերջ տրուի այս համաշխարհային հրդեհին, և երբ հայութեան այս «բեկորներ» կարողանան վերադառնալ իրենց լքած օջախները...

Սև-քարի գաղթ. ուսուցիչ Ազատ Խորէնեան

——

Օրղակլու (Դարաչիչակ-Ծաղկաձոր), 30 յունուար: Շրջանիս կրթական գործը աննախանձելի է: Գաղթականական դպրոցները շատ խղճուկ վիճակ ունին, դասական պիտոյքները՝ որ մօտ օրերս ենք ստացել՝ շատ սակաւ է, մանաւանդ տետրակներ, որից աշակերտութիւնը զրկւում է գրաւոր ուսուցումից: Դպրոցի վառելիք, լուսաւորութիւն, կաւիճ և այլն ծախքերի համար ուղարկուած է 10 ռ., այն ինչ իւրաքանչիւր դպրոցը ծախսած է 70—80 ռ.: Ուսուցիչները ստանում են ամսական 40 ռ. և այս չորս ամսուայ ընթացքում ստացել են 60 ռ.: Ինչ անի մի ուսուցիչ, որ մի քանի շնչից բաղկացած ընտանիքի տէր է:

Գալով ծխական դպրոցի ուսուցիչներին՝ նոյն դրութիւնը: Ուսուցիչները ստանում են տարեկան 450—500 ռ.: Ուսուցիչը ստիպուած է լինում տոկոսով դրամ վերցնել ու ապրել, իսկ միւս կողմից իւր նպաստը Բարեգործական Ընկերութիւնը ուշացնում է:

Վահան Աբրահամեան

## ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ

### ՀԱՅԿ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻ ՏԱՐԵԳԻՐ

23-ն մարտի նիստին, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, եղան հետևեալ որոշումները.

Տրապիզոնի Հայկ. Կոմիտէից ստացուած եւ 12,000 ռ., անձեռնմխելի գումարը մուծել երկրորդ Վարկային Խնայողական Ընկերութեան դրամարկղը:

Կարմիր Խաչի Ընկերութեան միջոցով Ամերիկայից ստացուած մի վագոն իրերը՝ գաղթականութեան համար, անմիջապէս ուղարկել Էրզրումի, Խնուսի և Վանի գաղթականների համար:

Կ. Հ. Բ. Ընկ. Խարհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

1. Սկվիրա քաղաքից —պ. Սահակ Մելիքսեդեկեանից յօգուտ փախստակ. 55 ռ..

2. Ի յիշատակ հանգ. Վարվառէ Վաս. Թամամշեանի նրա որդիներից և թոռներից 1000 ռ.:

3. Թեմիր Խան-Շուրայից՝ Լիւդմիլա Վլադիմիրովնա Կոմարեվսկուց յօգուտ փախստականների 10 ռ.:

4. Ղորղանեաններից ի յիշատակ Եկատերինէ Գր. Մելիք-Ղարագեօզեանի յօգուտ ճաշարանի 25 ռ.:

### Ճ Ի Ւ Ղ Ե Ր

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան Գորուայ ճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետևեալ նուէրները.

Իվան Միքայէլեան Խիթարեանից՝ Թիֆլիսում վախճանուած՝ իւր մայր Ցոֆիա Ռոմանեան Խիթարեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն 50 ռ., և Ալէքսանդր Պատուականեան Շահկամեանից 25 ռ.:

Ստեփան Միքայէլեան Տատեանից իւր մօր յիշատակին 50 ռ., Գորի քաղաքի խնայողական մանր վաճառականների բանկից ընդհանուր ժողովի վճռի համաձայն 50 ռ.:

Կ. Հ. Բ. Ը.-թեան Բաթումի ճիւղը շնորհակալութեամբ ստացաւ իր խնամքին յանձնուած որբանոցի օգտին հանգուցեալ Աստուր Կ. Խաչատրեանի ժառանգներից 300 ռ. և եղբ. Յովսէփ և Պիէր Մահրեաններից, ի յիշատակ իրենց հանգուցեալ հօր, 100 ռ.:

### ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՆՊԱՍՏՈՎ

Մարտի 8—15-ը

Ալիւր ուղարկուած է Նոր-Բայազէդ, Ղարանլուղ, Ղամառլու, Ղարաչինար, Անենօ՝ մէկ-մէկ վագոն, Վաղարշապատ՝ 2 վ.:

Բրինձ, Դիլիջանի որբանոցին 100 պուդ.:

Սապոն՝ Ախալցխայի, Ախալքալաքի և Դիլիջանի որբանոցներին 60 պ.:

Շաքար՝ նոյն որբանոցներին 100 պ.:

Լոբի՝ ուղարկուած է Ալէքսանդրապոլ 383 պ., Դիլիջան 384 պ., Քարվանսարա և Ղարաքիլիսա 100-ական պ., ընդամենը 967 պուդ:

Թէյ՝ Դիլիջանի որբանոցին 200 ֆ.:

Միսեղ՝ ուղարկուած է Ալէքսանդրապոլ, Իգդիր, Երևան, Գանձակ և Դիլիջան՝ մէկական վագոն:

Թիֆլիսի նահանգապետից ստացուած է մի վագոն շաքար:

Ամսոյս 11-ին կայացաւ պարենաւորման մասնաճիւղի հերթական նիստը, որտեղ բաժանմունքի կառավարիչ պ. Ա. Մխանսարեանը զեկուցեց, թէ շնորհիւ փոխադրութեան միջոցների պակասութեան, գրաւուած վայրերում գտնուող պահեստների համար մթերքներ ուղարկելը շատ է դժուարացել և շարունակ հեռագրեր են ստացւում, որոնցով խնդրում են շուտափոյթ ապրանքներ ուղարկել, որովհետև գաղթականները սովի են մատնուած: Ժողովը որոշեց, ի նկատի ունենալով, որ գրաւուած վայրերում ալիւրի պահանջը անչափ շատ է և որ Ընկերութեան բեռնատարքն այլ եւս հնար չունի բաւարարելու այդ շրջանների պահանջը, խնդրել գաղթականների գլխաւոր լիազօր գեն. Թամամշեանին՝ ի հաշիւ խնդրուած 600,000 ռ. անմիջապէս տալ Ընկերութեանս 100,000 ռ. այդ շրջանների համար բեռնատարք (транспортъ) կազմակերպելու, իսկ մինչև դրամի ստանալը, Ընկերութեան լիազօր Ա. Շարաֆեանին ուղարկել Իգդիր, մասնաւոր բեռնակիրներով մինչև 5,000 պ. ալիւր ուղարկելու Վանի պահեստին:

Որոշուեց նաև Վանի լիազօր Գ. Օհանջանեանին, համաձայն իր զեկուցման՝ թոյլ տալ կազմակերպելու Վանում փուռ, գաղթականների համար հաց թխելու, նրա տրամադրութեան տակ դնել 5,000 ռ. գարբնոց, թամբի և հիւսնի արհեստանոցներ բանալու Վանում:

Որոշուած է նաև շաքարաւազի նորման ապրիլի 1-ից դարձնել 1 ու կէս ֆ. և բանալ պահեստներ Նախիջևանում, Նորաշէնում, Մոլլագէօկչայում, Ջաղարում, Ուլզը-Զախչախում և Ղըշլխլարում:

# Քրոնիկոն

† Մարտի 22-ին Կարինում բժաւոր տիֆից վախճանուեց տեղական հայոց դպրոցի տեսուչ՝ Խարբերդի Կոլէճի նախկին ուսուցիչ Տօնապետ Լիւլէճեանը։

— Ուրբաթ մարտի 24-ին Հայ Գրողների Ընկերութեան հերթական երեկոյթում պ. Ա. Ջամալեանը դասախօսեց ֆրանսական յեղափոխութեան մասին։

Ուղղումն. «Համբաւաբերի» № 11-ում տպագրուած իշխ. Գ. Մ. Թումանեանի Սունդուկեանցի մասին յօդուածը վերնագրից բաց են թողնուած հետեւեալ տողերը. «Թարգմանութիւն «Բնոյթագրեր և յիշողութիւններ» գրքից, միեւնոյն հեղինակի։

— Որովհետև Թիֆլիսից հրաւիրուած հ. հ. Սահակ ա. ք. Սահակեանցը, Գրիգորիս ա. ք. Երզնկեանցը և պ. Միսակ Խոստիկեանցը, չկարողացան Էջմիածնի Մանկաժողովի Խորհրդակցութիւններին մասնակցել՝ պետական միջնակարգ դպրոցների հայոց կրօնի ծրագիրը կազմելու—այդ պատճառով Վեհափառ Կաթողիկոսը հրամայել էր Էջմիածնում կազմած ծրագիրը վերոյիշեալ անձերին յանձնել և նրանց դիտողութիւնները իմանալ։ Հաստատ աղբիւրներից լսում ենք, որ այդ երեք անձինք իրանց վրայ դրած պարտականութիւնները կատարել են։

— Կովկ. ուսումն. շրջանի հոգաբարձու Ռուդոլֆը հրաժարական է ներկայացրել Անդրկովկասեան կոմիսարներին, որ ընդունուել է։

—Պետ. Դում. անդամ Ջխէիձէին Թիֆլիս քաղաքի պատ. անդամ ընտրելու որոշումը Ա. Խատիսեանը հեռագրով յայտնել է նրան։

— Կոմիսար Մ. Պապաջանեանի խորհրդով կազմուած է լրագրողների մշտական բիւրօ, որը լինելու է պալատում և կանոնաւորապէս ստանալու է տեղեկութիւնները կոմիսարների և Նոր Կառավարութեան այլ մարմինների գործունէութեան մասին։

— Փախստականական գործի գլխ. լիազօր գեն. Թամամշեանը՝ Քաղաքների Միութ. գլխ. բաժանմունքին թոյլատրել է բժշկական խումբ ուղարկել Մուսունի շրջանի փախստականներին օգնութիւն հասցնելու։

# Արտաքին տեսութիւն

## ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Յեղափոխութիւնը նոր դարիշրջան բաց անելով ռուսաց պատմութեան մէջ՝ նաև նոր շրջան է բաց անում պատերազմի համար։ Նա բաւականաչափ փոփոխում է կռուող ուժերի իրական փոխյարաբերութիւններն ու վերաբերմունքները։ Թէ այստեղ Ռուսաստանում և թէ այնտեղ Գերմանիայում փոխւում է արդէն պատերազմի արդարացման ու ակնկալութեան հիմնական տեսակէտը։

Նախ միանգամայն անկասկած է դառնում այն հրէշաւոր, ոճրագործ իրողութիւնը, որ Ռուսաստանը մինչև այժմ չէ կռուել, այլ միայն դաւաճանել է. դաւաճանել է երեք տարի շարունակ՝ թէ իւր հարազատ ժողովրդին և թէ դաշնակիցներին։ Այսպիսով այս դժբախտ երկիրը միայն աւելորդ միլիոնաւոր մարդկային ու միլիարդաւոր նիւթական զոհեր է տուել մի բացարձակ չար ու եղեռնագործ կամքով. ուստի և բնական հետեւանքով երկարել է պատերազմը և նոյնպէս միլիոնաւոր ապարդիւն զոհեր խլել և միւս կողմերից։

Այսօր այդ ոճրագործ կամքը չկայ։ Ընդհակառակն այսօր միայն ակամայ, բայց շիտակօրէն կռուելու անկասկածելի ցանկութիւնը կայ։ Այս պարագան ինքնին մի նոր կշիռ է տալիս պատերազմող ուժերին։

Բայց կայ աւելի ծանրակշիռն ու ուշագրաւը։ Ռուսական Յեղափոխութեամբ վերանում, անհիմն է դառնում սկսած պատերազմը անպայման «յաղթութեամբ» աւարտելու հիմունքները գերմանական սոց.-դեմոկրատիայի շարքերում։ Այս շատ կարեւոր հանգամանք է, որովհետև գերմանական սոց.-դեմոկրատիան է, որ իւր հակացարական մտայնութեամբ գերմանական բռնապետական զօրապետութեան—միլիտարիզմի գլխաւոր նեցուկն է հանդիսանում այս պատերազմի մէջ։

Եւ դժբախտաբար պատճառները շատ խորն են, հիմնուած մարքսիստական միակողմանի ու տարամերժ տեսակէտի վրայ. Հեգելեան դիալեկտիկան—տիեզերական ու պատմական կեանքի զարգացման «տրամաբանական» (**) ըմբռնումը խորթ ու դըժբախտ, որովհետև միանգամայն անգիտական աւանդ է եղել մարքսիստականութեան համար։ Մարքսեան տեսութեան խոշորագոյն վրիպումների գլխաւոր պատճառ այդ սխալ մտածելակերպն է. կարծելով՝ թէ ամեն ինչ եռաստիճան հակադրութիւններով—դիալեկտիկօրէն է զարգանում՝ մարքսիականները ամեն տեղ բացարձակ, տարամերժ ու անհրաժեշտ հակադրութիւններ են ուզում տեսնել կամ կամենում այդ ստեղծել։ Այլապէս նրանք պատմութեան մէջ դրական զարգացում—բացասման բացասում չեն գտնում։ Ուր չկայ իշխանութեան կենտրոնացում, այնտեղ չի կատարւում նաև խոշոր դրամագլխի կենտրոնացում—կապիտալիզացիա, առաջ չէ գալիս աշխատաւորութեան զանգուածային սեփականազրկում—պրոլետարիզացիա, հնարաւոր չէ դառնում ընկերվարականացումը կամ համայնականացումը մասնաւոր սեփականութեան, տրամաբանում են նրանք։

Ուրեմն իշխանութեան կենտրոնացումը առ այժմ նկատւում է իբրև հասարակական կեանքի «դիալեկտիկական», ցանկալի զարգացման նախապայման։ Եւ այս միակողմանի տրամաբանութեամբ դեռ եւս Կարլ Մարքսը և Էնգելսը վատ աչքով էին նայում գիւղատնտեսական (*) Ռուսաստանի հզօրանալուն և Բալկաններում գերիշխանութիւն ձեռք բերելուն։ Նրանք նոյն իսկ չափազանց բարձր գնահատելով գերմանական խոշոր արդիւնաբերութեան շինարար ու նուաճող դերը մի տեսակ անյարիր «ազգայնականութեան» մէջ էին ընկնում։ Նրանք վճռականօրէն մերժում էին աւստրիական, բալկանեան և թիւրքական մանր, ճնշուած ազգերի, «ազգերի այդ փշրանքների» գոյութեան ու ազգայնօրէն զարգացման իրաւունքները։ Աւելին. մի ամօթալի մտայնութեամբ նրանք նոյն իսկ կասկածում էին մակեդոնացիների, հայերի և այլ կտորուածների վրայ։

Ամեն տեղ նրանք «գիւղատնտեսական», բռնապետական Ռուսաստանի մատն էին տեսնում։ Սա է, որ իւր նուաճողական քաղաքականութեան համար մանր ազգերի լեզուով քարոզ է կարդում։ Մանր ազգերին՝—պատմութեան դիալեկտիկ (*) ընթացքով անխուսափելիօրէն մահուան դատապարտուած ազգերի այդ խղճուկ մնացորդներին» յարութիւն տալով՝ յետամնաց. ցարական Ռուսաստանը ամենամեծ խոչընդոտն է հանդիսանում ընկերվարութեան համար. Նա թոյլ չէ տալիս, որ (գերմանական) կապիտալիստական արդիւնագործութիւնը տարածուի անարգել, սեփականազուրկ ժողովուրդներին և մօտեցնի ընկերվարութեան յաղթանակը։

Ահա այն տարամերժ, այն դժբախտ մտայնութիւնն ու միակողմանի տրամաբանութիւնը, որից մինչև այսօր էլ չէ ազատուել գերմանական սոց.-դեմոկրատիան և որի շնորհիւ նա մի օրգանական, անհաշտ ատելութիւն է տածում դէպի Ռուսաս-

տանը։ Վերջինս ներկայացնում էր նրա աչքին իբրև մի տընտեսապէս, քաղաքականապէս և կուլտուրապէս կատարելապէս յետամնաց ու անյոյս երկիր։ Ռուսաստանը նրանց համար ասիական աւատական բռնապետութեան մարմնացումն էր։ Այդ՝ մտրակի և կօզակների երկիրն էր։ Մի անհասկանալի «դիալեկտիկայով»․ տրամաբանութեամբ Հեգել—Մարքսեան ամենահզօր դիալեկտիկան—պատմութեան այս «բնաանհրաժեշտ ու երկաթէ օրէնքներով» զարգացման (հենց առ այժմ) չէր ենթարկւում «կօզակների հայրենիքը»։

Ընդհակառակը՝ գերմանական սոց.-դեմոկրատները վախենում էին՝ թէ չլինի կօզակների և ցարի շնորհիւ կախարդական դիալեկտիկան կանգ առնի և «գերմանական երկրներում»։ «Soll Deutschland кosakisch werden?»—«Պէ՞տք է Գերմանիան կօզակային դառնայ», բացականչում էին նրանք, դիալեկտիկօրէն մտածողները, սարսափած կօզակի մտրակից՝ և յայտարարում անվերապահ—«Ռուսաստանի դէմ մղած պատերազմը յեղափոխական պատերազմ է»…

Յարգանքի բաժինը տանք ճշմարտութեան՝ և աւելացնենք, որ եթէ այդ ամենը ճիշտ էր, ապա այդ ճիշտ էր, հիմնաւոր էր մինչև այսօր։ Ռուսական Մեծ Յեղափոխութիւնը զինաթափ պէտք է անի գերմանական սոց.-դեմոկրատիային։ Ռուսական յաղթական դեմոկրատիայի—ժողովրդապետութեան դէմ նրա բոլոր առարկութիւններն ու պատերազմի «թէոդիցէն»—արդարացումը միանգամայն անհիմն են։ Այսօր ռուսական դեմոկրատիան է, որ հաշտութեան պատրաստակամութեամբ յետ է դարձնում նրանց իրենց խօսքը և ասում.—«Պէ՞տք է որ դեմոկրատիկ Ռուսաստանը պրուսական և իւնկերական դառնայ».—«Պրուսական Գերմանիայի դէմ պատերազմը յեղափոխական, ազատագրական պատերազմ է»։

Այսպէս՝ թէ ռազմական, նիւթական և թէ տեսական, գաղափարային կողմից բաւականաչափ փոխւում են կռուողների յարաբերութիւններն ու տեսակէտները։ Այդ փոփոխութիւնը աւելի ակնյայտնի կը լինի, եթէ չեշտենք, որ դեմոկրատիկ Ռուսաստանը ոչ առաջուայ շարժառիթներից է շարունակում պատերազմը, ոչ էլ առաջուայ յոյսերով։ Պատերազմով նա միայն իր ձեռք բերած իրաւունքներն ու ազատութիւններն է ամրապնդել կամենում։ Պատերազմը նրա համար հին բռնապետական իշխանութեան և նոր ազատ կարգի հաստատման գրաւական է։ Նա հրաժարւում է նուաճողական և միացնող քաղաքականութիւնից։ Նոր կառավարութեան գլխաւոր ուժերը—դեմոկրատիան և առաջաւոր բուրժուազիան դատապարտում են աննեկսիաները—քաղաքական բռնի միացումները։ Սոց.-դեմոկրատիայի բերան „Правда"-ն գրում է. «Ժամանակաւոր կառավարութիւնը կամենում է յափշտակել ուրիշ երկրներ և ստրկացնել ուրիշ ժողովուրդներ (Կոստանդնուպոլիսը, լեհերին, հայերին, ուկրայինցիներին)։ Իսկ մենք ասում ենք, որ ամեն ժողովուրդ ինքը պէտք է ազատօրէն որոշէ ու տնօրինէ իր վիճակը, և կամենում ենք շուտով վերջացնել պատերազմը»։ „День"-ը նոյնպէս դէմ է՝ թէ անպայման ու անմիջապէս պատերազմը վերջացնելուն և թէ աշխարհակալական—իմպերիալիստական նկատումներով պատերազմը շարունակելուն. բարեյաջող, երկու կողմերի համար էլ ձեռնտու և շուտափոյթ հաշտութեան համար թերթը անհրաժեշտ է համարում, որ «գերմանական ժողովուրդը իմանայ, որ ռուսական դեմոկրատիան ոչ մի նուաճողական—աննեկցիայի դիտաւորութիւններ չունի». որ ռուս ժողովուրդը խաղաղութիւն է ցանկանում «ժողովուրդների հաշտ և եղբայրական կեանքի համար»։

Նկատի ունենալով տեսակէտների այս հիմնական յեղաշրջումը և համոզուած լինելով, որ այդ ամենը առանց արձագանգի չեն մնայ Գերմանիայում, սպասում ենք, որ Յեղափոխութիւնը մեծ ազդեցութիւն կունենայ պատերազմի ընթացքի վրայ։ Իւր բոլոր տեսական ու գործնական հիմունքներից զինաթափ գերմանական սոց.-դեմոկրատիան այլ ևս «յեղափոխական պատերազմ» չի համարի Ռուսաստանի դէմ իւր օժանդակութեամբ մղած պատերազմը, կը դադարի իւր բռնապետին սատար լինելու և՝ թերևս շուտով տապալելով նրան՝ հնարաւոր կը դարձնի խաղաղութիւնը։

Ազատ ու ինքնիշխան ժողովուրդների համար աւելորդ ու անմիտ է պատերազմը, և նրանք վերջ կը տան պատերազմին մշտական խաղաղութիւն հաստատելով աշխարհում։

Վ. Խ.

## ԿԱՏԱՐՈՒԵՑ

Միշտ կատարուել է այն, ինչ որ կատարուեց։ Պատմութիւնը դժբախտաբար չի խրատում բռնակալներին։ Եթէ թեթևակի կերպով էլ վերյիշենք բոլոր կործանուած բռնապետութիւնների և բռնակալների պատմութիւնը, կը տեսնենք, որ նրանք բոլորը մի վախճան են ունեցել—կործանումն և պատմական դատաստանի մահավճիռ։

Էլ չեմ ասում, որ ամենահին ժամանակներից, յունական հասարակապետութիւնից առաջ եղած բռնակալները, Աղեքսանդր Մակեդոնացին Լենկթեմուրը, Նադիր շահն ու Լուդովիկոս տասնև վեցերորդը, Կարլոս ու Նասրադին, Աբդուլ Համիդ ու Մամադ Ալի շահ մինչև Նիկոլայոս երկրորդ և անձնապէս էլ սաստիկ տուժել են հակաժողովրդական գործերի համար։ Ապրել և չգիտնալ ապրելու շրջապատի համար, ապրել հակասոցիալական ձգտումներով նոյն իսկ անհատին չի կարող երջանկութիւն տալ, ուրեմն այսպիսի ընթացքը ինչպէս կարող է անպատիժ մնալ թագաւորների և իշխանաւորների համար, որոնք ըստ Եղիշէի պատասխանատու են ոչ միայն իրենց մեղքերի համար, այլ և այն անմեղների համար, որոնց կորստեան եղան պատճառ։

Դարերի ընթացքում լայնածաւալ Ռուսաստանը իւր բազմաթիւ հպատակ ժողովրդների հետ հեծում ու արիւնաքամ էր լինում բռնապետութեան ճանկերում, բռնապետութեան, որի գործակալ.-պաշտօնեաները, անամօթ և անխիղճ, կաշառակեր և անբարոյականացած կեղեքում էին թոյլերին և անզօրներին։ Միլիոնաւոր մարդիկ, որոնց թւում և բազմաթիւ առաքինի և հանճարաւորները, բանտերում էին վերջացնում իրենց կեանքը կամ կախաղանի զոհ դառնում։ Մենք, հայերս, որ երբէք լաւ օր չենք տեսել, որ զինուած ոսոխներով շրջապատած զոհի նման, մի դահճի ձեռքից ընկել ենք միշտ միւս դագանի ձեռքը, մենք ափսոսալու ոչինչ չունենք այս ռեժիմի կործանման պատճառով։

Մեր պատմագիրները հայ ժողովուրդը տխրասէր են անուանում և հայն աւելի քան տխրասէր է եղել ռուս կառավարութեան հանդէպ, հայը միշտ հաւատացել է թէ ռուս կառավարութիւնը նրա փրկիչը պիտի լինի։ Բայց, Բայց ռուս կառավարութեան երկդիմի, խարդախ, հայատեաց ընթացքը աւելի քան ապացուցուած է։ Մէկ-մէկ թուելը աւելորդ է։

Բաւական է ապրել մեր գաւառներում համոզուելու համար, թէ ինչ անզգամ վերաբերմունք ունի չինովնիկը հայ գիւղացուն և ինտելիգենտին։ Սոսկալի յանցանքներ են կատարւում հայ գիւղացու դէմ, նոյն իսկ դատարաններում շատ անգամ հայը առանձնապէս հալածանքի էր ենթարկւում։ Մնում է մեզ ամեն կերպ աշխատելու, որ մեր դրացի թուրքերը և վրացիք չտարուեն շովինիզմով և գիտակցեն համերաշխ գործունէութեան կարևորութիւնը։ Այսպիսի համերաշխութիւն կարող է ստեղծուել միմիայն

արդարութեան և անկողմնապահ վերաբերմունքի առաջնորդութեամբ։ Թող անցեալի խաւար օրերը ուղեցոյց լինեն չկրկնելու հին սխալները։ Գ. Ննդիքարեան

## Տաճկահայեր

Ստոկհոլմում, 15 մարտի տեղի ունեցաւ հրապարակային ժողով, մի քանի հազար մարդու մասնակցութեամբ՝ նուիրուած հայոց հարցի քննութեան։ Որոշուեց բողոք յայտնել հայերի հանդէպ Թիւրքերի ցոյց տուած անգութ և անխիղճ վերաբերմունքի և ցանկութիւն յայտնել, որ շուէդական և միւս չեզոք պետութիւնները ի գործ դնեն իրենց ամբողջ ազդեցութիւնը պաշտպանելու հայերի կեանքը, գոյքը և միւս բոլոր իրաւունքները։

Ժողովին ներկայ էին ռուսաց, անգլիացոց, ֆրանսացոց, իտալացոց և բելգիացոց դեսպանները։

— Գերմանացի սոցիալ-դեմոկրատների մի խումբ Ստոկհոլմ գալով, տեսակցութիւն է ունեցել Ռուսաստան վերադարձող գաղթականների հետ և խօսել հաշտութեան հնարաւոր պայմանների մասին, ուր ի միջի այլոց ասում է, որ Գերմանիան իրեն պահէ Էլզաս-Լոտարինգիան, Բելգիային տրուի անկախութիւն առանց զօրքի և կազմուի անկախ Հայաստան՝ Թիւրքիայի պաշտպանութեան տակ։

## Գեղարուեստ

### ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ՔԱՅԼԵՐԳ

Ընչազուրկներ բոլոր երկիրների, միացէ՛ք.

Ջլապինդ հանքափոր և հսկայ դարբին,
բանուորներ, ընկերներ ու ժխոր.
ելնենք վեր, լուսացայ, շողշողաց արփին,
ողջունենք իր ծագման ուժը խոր։

Գործարան-հընոցից, գետնափոր հորից
ելնենք դուրս փողոցներ նեղ եւ ձիգ.
համարձակ ու խիզախ վեր բռնենք նորից
դրօշը սուրբ, կարմրափառ, գեղեցիկ։

Ոտքի՛, ընկերնե՛ր, մտնե՛նք դրօշի տակ,
քայլե՛նք շար առ շար և խըրոխտ, շիտակ
գընանք դէպ կըռիւ, մեր ուժին գիտակ,
յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ։

Մեր արիւն, մեր քրտինք՝ հարուստին խորտիկ,
որ չունի ըդգացում ամօթի.
մինչդեռ մենք, մեր քոյրեր, մեր, հիւծուած որդիք
տնքում ենք կիսամերկ, անօթի։

Խորտակե՛նք, ընկերնե՛ր, բռնութեան շըղթան,
խորտակե՛նք օրէնքներ ապական,
թող չարեր արնածուծ խաւարում վըխտան,
սլանանք դէպի լոյս ապագան։

Ոտքի՛, ընկերնե՛ր, մտնե՛նք դրօշի տակ,
քայլենք շար առ շար և խըրոխտ, շիտակ,
գընանք դէպ կըռիւ, մեր ուժին գիտակ,
յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ։

Վախկոտներ մեզանից թող լինեն բաժան,
թող դառնան բռնութեան լուռ գերի,
մենք դէմ ենք կեղծիքի, զրկանքի դաժան,
ստրուկ չե՛նք հնացած կուռքերի։

Եւ որպէս նոր խօսքի փոթորկոտ ալիք՝
գրոհ տանք եզերքից մի եզերք,
եւ հարթենք ճանապարհ օրերի գալիք,
նոր լոյսով հըրդեհենք տիեզերք։

Ոտքի՛, ընկերնե՛ր, մտնենք դրօշի տակ,
քայլե՛նք շար առ շար և խըրոխտ, շիտակ
գընանք դէպ կըռիւ, մեր ուժին գիտակ,
յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ։

ԱԶԱՏ-ՎՇՏՈՒՆԻ

## Մատենախօսութիւն

EUROPE AHD TNE TURKS, by Noel Buxton, M. P. Methuen & bo. Ltd. London.

ԵՐՈՊԱ ԵՒ ԹՈՒՐՔԵՐ, հեղինակ Նոյել Բըքստըն, գինը 1 շիլինգ.—

—o—

Այս հատորը առաջին անգամ 1907-ին հրատարակուեցաւ, ապա 1912-ին լոյս տեսաւ բ. հրատարակութիւնն՝ յաւելուածներով։ Գրքոյկին կցուած են 5 քաղդագական քարտէզ՝ որոնք ցոյց են տալիս եւրոպական Թիւրքիոյ հետզհետէ փոքրանալը։

Նոյել Բըքստըն (իւր եղբօր հետ Արեւելեան հարցին նուիրուած յայտնի ռահվիրաներ), սոյն հատորով խօսում է մասնաւորապէս Բալկաններու քաղաքական կացութեան, այլազան ցեղերու քաղաքակրթութեան, տնտեսութեան ու Օսմանեան վարչութեան ներքև կրած տառապանքներու մասին՝ բիւզանդական ժամանակներէ սկսած մինչև Բալկանեան պատերազմ։ Ցարգելի հեղինակը, որ քաջ ծանօթ է Արևելեան հարցի էութեանը, նկատում է, որ Բալկաններու խառնակութիւններու բուն պատճառը սահմաններու քմահաճ բաժանումը, հետևաբար ժողովուրդներու ներքին կեանքին, պահանջներուն, նրանց հոգեբանութեան նկատի չառնուիլն է եւրոպական ու թուրք տիրող տարրերու կողմից, որով և բաղխումը անխուսափելի էր։ Ապա, քննում է այն ծրագրերը, որոնք մտադրուեցան, բայց միշտ էլ մնացին անգործադրելի. ինչպէս օրինակ՝ բարեկարգում Թիւրքիոյ կողմից և բարեկարգում Եւրոպայի ձեռքով և հասնում այն եզրակացութեան, թէ՝ «Թիւրքիան խորտակեց ամեն յոյս՝ օրինաւոր բարենորոգում մտցնելու հարցում», իսկ Եւրոպայի իսկական շահն ու հաշիւները երկար ժամանակ չեն հաշտուած, որով հարցը թողուած է անշարժ, այնպէս որ՝ Բալկաններու ա. և բ. պատերազմներու անուղղակի պատճառ դարձան։ Սոյն հատորը վերջին տարիներու անցքերու ու նոր ընդհարումներու (կամբինեցիոն)

բերմամբ թէպէտ զուրկ է այժմէութենէն, սակայն և այնպէս, շահեկան է, որ հեղինակը հեռատեսութեամբ և տարիներ առաջ զգուշացնում էր Եւրոպան, մատնանիշ անելով ստոյգ վտանգը... Ինչ որ այսօր իրականութիւն է. եթէ Եւրոպան հարկաւոր եղած լրջութեամբ վերաբերուէր ոչ թէ միայն Բալկաններու, այլ՝ ընդհանուր «Արեւելեան հարցին», թշուառ հայերը այնքան մեծ զոհ չէին ունենայ...

Գիրքը կազմուած է մեծ խնամքով, հարուստ բովանդակութեամբ, ուր հասարակական, ընկերական, պատմական, ազգագրական ծանօթութիւններով լի մտքեր իրար կը խաչաձեւեն, որով գրքին կուտայ լուրջ բանասիրական երեւոյթ։

Մաժակ

# ԳԻՏԱԿԱՆ

## ԲԻՍՈՒԹՈՒՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի մասին.—Ռուսական զօրքը իր առաջխաղացութեամբ դէպի Քիրմանշահ, սկսեալ Համադանից, ճանապարհին գրաւել է Բիսութուն աւանը, ուր քարաժայռի վրայ դեռ կանգուն կայ մի արձանագրութիւն, որ քանդակել է տուել Քրիստոսից 500 տարի առաջ պարսից թագաւոր Դարեհը։

«Եւ Դարեհ թագաւորը ասաց. Դադարշէս անունով մի հայի, իմ ծառային, ես ուղարկեցի Հայաստան։ Իրան այսպէս ասացի. «Գալէ ապստամբների բանակի դէմ, որ իրանք իրանց իմիններից չեն համարում. սպանիր նրանց»։ Տետոյ քալեց Դադարշէսը։ Երբ որ Հայաստան հասաւ, ապստամբները խումբ կազմեցին և Դադարշէսին դէմ ելան պատերազմ մղելու համար։ Ցետոյ Դադարշէս պատերազմեց նրանց հետ։ Հայաստանի մէջ մի բերդ կայ, Զուզա անունով։ Այդտեղ Որմիզդը իմ օգնականս եղաւ։ Որմիզդի շնորհիւ իմ բանակս շատ մարդ սպանեց ապստամբների բանակից։ Այդ տեղի ունեցաւ Թիւրավաշարա ամսի ութերորդ օրը (մայիս-յունիս 519 թ. Քրիստոսից առաջ), երբ նրանք պատերազմեցին այս կերպով»։ («Մշակ» № 46)

# ՄԱՄՈՒԼ

Տաճկահայաստանի նորանուաճ գաւառների նորաթուխ զինուորական ընդհանուր նահանգապետ Ռոմանովսկի-Ռոմանկօն մի ազատամիտ կոչով աւետում է գրաւուած վայրերի ազգաբնակութեան Ռուսաստանի մեծ յեղափոխութիւնը, հրաւիրելով նոր նուաճուած շրջանների ժողովրդներին «մտնել ռուս ժողովրդի գիրկը»։

Այս առթիւ «Մշակը» հետեւալն է դիտում.

«Նոր գինին չեն ածում հին տկերի մէջ»։

Տպելով պ. Ռոմանովսկի-Ռոմանկոյի այս կոչը, մենք էլ մեր կոչով դիմում ենք հեղինակին՝ ի սէր նուաճած երկրի և նրա տարաբաղդ ազգաբնակութեան՝ հեռանալ պաշտօնից իր ընկերակիցներով հանդերձ, որպէսզի երկրի բնակիչները իսկապէս կարողանան սիրել մայր Ռուսաստանը, եթէ ի հարկէ Թիւրքահայաստանի վիճակը այնպէս տնօրինուի, որ միացնեն Ռուսաստանին։ Ռոմանովսկին այն անձերից է, որոնք իսպառ բացասում էին հայի իրաւունքը ծառայել իր թշուառ հայրենիքում—«ես հային չեմ կարող տեղ տալ նոր նուաճուած երկիրներում»—իսկ հրաւիրում էին Զղանովսկիների և նման մարդկանց։

Վանի քաղաքային ոստիկանութեան համար հրաւիրուել են նոյն Ռոմանովսկու կարգադրութեամբ մարդիկ, որոնք մի բառ անգամ հայերէն չգիտեն։

Եթէ միայն Ռոմանովսկի-Ռոմանկօները շարունակեն կառավարել և տնօրինել Ռուսաստանի և իր հովանու տակ նուաճուած երկրների բախտը, երբէք չի լինիլ այն մեզ բոլորիս ցանկացած ու սիրելի Ռուսական Պետութիւնը, այլ նախկին ստրկական Ռուսաստանը։ Ուստի ոչ միայն բուն ռուս, այլ և բոլոր միւս մանաւանդ Կովկասի ժողովուրդների բուռն ցանկութիւնն է Ազատ Ռուսաստանը ազատուած տեսնել բաղդախնդիր Ռոմանկօներից.

— —

Երեւանի թիւրքահայ մտաւորականների բերան «Աշխատանքը», «Գրաւուած Թիւրքահայաստանն հապա» խորագրով խմբագրականում գրում է հետեւալը.

«Ռուսական մեծ յեղափոխութեան ալիքները Պետրոգրադէն սկսելով՝ անցան Մոսկուա և ծաւալեցան Ռուսաստանի բոլոր մեծ ու փոքր քաղաքներն ու հեռաւոր անկիւնները։ Ու այսօր, ողջ Ռուսաստան իր այլազան ազգերով, լարած է իր բովանդակ ոյժերը, որպէսզի ժողովրդական կազմակերպութիւնները ստեղծելով, հաստատուն և անսասան հիմքերու վրայ դնեն նոր իրաւակարգը։

«Իսկ գրաւուած Թիւրքահայաստանը։ Ազատ Ռուսաստանի ազատ ոգին տակաւին չի թեւածեր այն դժբաղդ հողամասերուն վրայ, որ արեան մէջ լողացին ու ոճիրով խեղդուեցան։ Ցարական բռնապետութիւնը գրաւուած մասերն ղրկեց իր ամենաստ և բռնաւոր պաշտօնեաները... Պէտք է օր առաջ հեռացուեն Թիւրքահայաստանէն հին կարգի բոլոր պաշտօնեաները։ Պէտք է անյապաղ քանդուի հաստատուած ամօթալի վարչակազմը և ղրկուին տեղական լեզուին, վարք ու բարքին տեղեակ ժողովրդասէր պաշտօնեաներ, որոնք տեղական ոյժերու օժանդակութեամբ հաստատեն նոր իրաւակարգը՝ արժանի ազատ Ռուսաստանի անուան ու պատուին»։

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

## «ՍԱՔԱՐԹՈՒԵԼՈՅԻ» ԶՐՊԱՐՏՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ

Գեներալ-մայոր Բերնովի կողմից 1917 յունուարի 17 թուակիր պաշտօնական մի գրութեամբ Քաղ. Միութեան Դիլիջանի գլխաւոր լիազօր պ. Ս. Ցարութիւնեանից խնդրում է տեղեկացնել՝ թէ իրականութեան որքան համապատասխան է, Թիֆլիս հրատարակուող վրացական «Սաքարթուելօ» թերթի 1916-ի դեկտեմբ. 7-ի 273 համարի Դիլիջանից գրուած թղթակցութիւնը, ուր ասուած է՝ թէ ներկայիս Դիլիջանում 3,000-ի մօտ թրքահայ գաղթական որբ կայ, որոնց համար յարմարուած է 500 մահճականոց մի հիւանդանոց, որտեղից օգտուում են նաև տեղացի հայ զինուորականները, սակայն վրացի զինուորականները ոչ, որովհետև հիւանդանոցը բացառապէս հայերու տրամադրութեան տակ է։

Իբրև Քաղ. Միութեան Դիլիջանի գաղթականական հիւանդանոցի բժիշկ, պարտք եմ համարում հրապարակաւ յայտնելու, որ եղած այդ թղթակցութիւնը իրականութեան անհամապատասխան մի զրպարտութիւն է։ Ահաւասիկ իրողութիւնը. Ներկայիս Դիլիջան գտնուող թրքահայ գաղթական որբերու թիւը մօտաւորապէս 1,000-ի է հասնում, իսկ հիւանդանոցը 120 մահճականոց է, որը իւր բացման օրէն (1915 օգոստ. 20) ցայսօր, առանց խտրութեան տրամադրելի եղած է, թէ տեղացիներու (հայ ու ռուս) և թէ՝ Դիլիջանի և Դիլիջանի վրայով Կովկասեան ռազմա-

բեմը անցնող հայ, ռուս, թուրք և վրացի զինուորներու։

1916 տարուան ընթացքին ունեցած ենք 2491 այցելու հիւանդ, որոնցից 757-ը տեղացի, 445-ը զինուորական, իսկ մնացածը որբ ու գաղթական։ Միևնոյն տարուան ընթացքին հիւանդանոց ընդունած ենք (վարակիչ և ոչ վարակիչ) 923 հիւանդ, որոնցից 129-ը տեղացի (հայ և ռուս), 84-ը զինուորական, իսկ մնացածը որբ և գաղթական։

Մեզ մօտ ընդունուած վերոյիշեալ 84 հիւանդ զինուորականներէն 35-ը ռուս էին, 23-ը հայ, 22-ը վրացի, իսկ 4-ը թուրք։

Այս ամենէն յետոյ՝ մենք սիրում ենք յուսալ, որ «Սաքարթուելոյի» յարգելի խմբագրութիւնը պիտի բարեհաճի միամտութիւնը չունենալ իրեն հրամցուած խւրաքանչիւր այդ կարգի յերիւրանքները հիւրասիրելու իւր թերթի էջերում։

Հակառակ պարագային ստիպուած պիտի լինենք օրինական միջոցի դիմել, ճշմարտութիւնը անաղարտ պահելու համար։

Գաղ. Միութեան Դիլիջանի գաղթականական
հիւանդանոցի կառ. բժշկ. Եազմաճեան

Դիլիջան, 27 փետր.

—o—

Ցաւօք սրտի յայտնում ենք մեր ուսուցիչ, Արշակ Զիլինգարեանի մահը, որ խլեց նրան իւր սիրած և ազնիւ հայ մանուկ սերնդի դաստիարակութեան գրկից։ Փառք մեր կեանքի համեստ և համակրելի ուսուցչին։

Ուս. Խաչ. Ուշտունեան և ծխ.
դպր. հոգաբարձութիւն։

Սոլակ գիւղ, 13 մարտի

---

## ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

Ստացանք մեր աշխատակից Թամալեանց Ս.-ի «Հայը Ցոլքի օրում» գիրքը, 80 էջ. գինը 50 կոպ. տպագրուած պ. Սիմէօն Մատինեանցի ծախքով։

Հեղինակը յանուն պ. Ս. Մատինեանցի այդ գրքից մի-մի օրինակ նուէր է ուղարկում բոլոր հայ գաղթական դպրոցներին և ընկերութիւններին։

— Ֆրանսիայում գործող հայ ականաւոր գործիչ և գրող Արշակ Չօպանեանի «La France et le peuple Arménien» և «Offrande poétique à la France» աշխատութիւնները։

---

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ, Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

---



---



---

## ԻՍԱՀԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ

### 1 Աշխատութիւններ

1. Հայոց գիրը, պատկուած մրցանակով . . . 1 50
2. Համառօտ տրամաբանութիւն . . . 1 —
3. Գերմանիայի մանկավարժական բարձրագոյն հաստատութիւնները . . . — 40
4. Ներսիսեան դպր. առաջին դպ. ճանապարհորդութիւնը — 40
5. Երկրորդ ճանապարհորդութիւնը . . . — 40
6. Աշակերտի յուշատետրը . . . — 30
7. Իմ օրագիրը . . . — 25
8. Ծաղկոց (մանկ. պարտէզ) . . . — 10
9. Զգացմունք. աշխարհ («Վէրք Հայաստանի»-ի մասին) — 30
10. Ե. Սպիրի. Կին վիպագիր . . . — 15
11. Ստեփաննոս Պալասանեան . . . — 25
12. Գէորգ Բարխուդարեան—կենսագր. և քննադատական — —
13. Լէօպոլդ Ֆոն Ռանքէ և հայոց պատմութիւնը . — —
14. Սանահին . . . — 30
15. Գոշայ վանք, Գոշ Մխիթարի կենսագրութեամբ . — 40
16. Թէ ովքեր էին Վարդանանց դաստիարակները . — —
17. 1500 տարի առաջ (հայոց տառերի գիւտը) . — 20

### 2 Թարգմանութիւններ (գերմաներէնից)

18. Պեստալօցցի, Լինհարդ և Գերտրուդ . . . 1 50
19. Ժան Ժակ Ռուսո, Էմիլ (թարգմ. ընդարձակ յառաջաբանով). գիրք Ա. . . . — 50
20. Պրօֆ. Ռատցէլ, Տարբեր ազգագրութեան . . — 50
21. Հուքսլէյ, Բնագիտութիւն . . . — 40
22. Նաուման, Երգրում . . . — 15
23. Սպիրի, Վարդ Բեռլին . . . — 10
24. » Ուռենց Յովսէփ . . . — 15
25. » Այծարած Մօնի . . . — 15
26. » Ալպեան հովիւ . . . — 20
27. Հայրենագուրկ . . . — 50
28. Մ. Եօկայի, Ուրացողը . . . — 20
29. Տնային բժշկարան, հրատ. բժ. Գ. Բաբեանի I, II և III հատ. ամողջ կէսը . . . 2 60
30. Ժան Ժակ Ռուսօ. Էմիլ. գիրք երկրորդ . . — 50
31. Հին Արևելքի քաղաքակրթութիւնը և հերոսական Յունաստանը. (Ե. Թաղէոսեանի հետ) . . 1 —
32. Հայաստանն երբեմն և այժմ. Լ. Հաուպտի . . — 20
33. Ա. Միւլլեր, խաղաղասիրական պատանեկան գիրք . — 40

Կարելի է դիմել նաև՝ Армянская Семинарія Нерсисянъ, Иса Арутюнянъ.

